## ԱԶԳ. ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՓՐՈՖ. ԹՈՒԻ

Խորհրդարանը 120,000 ֆրանքի վարկ մը քուէարկեց, փրոֆ. Թուի ազգային յուղարկաւորութեան համար որ տեղի կ'ունենայ այսօր: Հանգուցեալ գիտնականը պիտի թաղուի փանթէօնեան հատուածին մէջ:

ՊԷՅՐՈՒԹԻ ԲԱՆՏԱՐԿԵԱԼՆԵՐՈՒՆ ԾՈՄԸ

«Իւմանիթէ» կը գրէ թէ Պէյրութի մէջ մէկէն մինչեւ վեց ամիս բանտարկութեան դատապարտուած բանուորները (ընդ. կ'ուզէ համայնավարներ) ծոմ կը պահեն: Կառավարութիւնը հրամայած է դանոնք կերակրել արուեստական միջոցներով:



«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (31)

# ԳԱՂՏՆԻ ԳՈՐԾԱԿԱԼ

ԺՈՒԼԻԱ ԼԱԶԱՐԻ

— Ի՞նչպէս կը ղրկէր իր տեղեկութիւնները:

— Չէր ղրկեր, չէր փորձեր իսկ: Գերմանները իրեն զինքը վտարած էին եւ անոնց հաշւոյն չէր որ կ'աշխատէր: Զանտրայի համար կ'աշխատէր: Անգլիա պտոյտէն վերջ միտք ունէր երթալ ղայն գտնելու Հոլանտա: Հնարամտութիւն եւ խելք չունի, բայց որովհետեւ ոչ ոք ուշադրութիւն կ'ընէ իրեն, համարձակութիւն կ'առնէր եւ ամէն տեսակի լուրեր կը հաւաքէր, վստահ թէ ոչ մէկ վտանգ կայ իրեն համար: Իր նամակներէն մէկուն մէջ կ'ըսէր — «իմ անուշիկս, քեզ սատանիկ հետաքրքրող բաներ ունիմ ըսելիք», և սատանիկ բառը ստորագծած էր:

Ռ. ընդմիջեց եւ ձեռքերը շփեց:

Իր իսկ խորամանկութեան գաղափարը մաշած դէմքը կը լուսաւորէր սատանայական ուրախութեամբ մը:

— Հաճելի լրտեսութիւն մըն էր: Կը հասկնաք անշուշտ թէ իրմով չէի հետաքրքրուեր: Միայն հետ էր գործըս: Ուրեմն փաստերը ձեռք ձգելս պէս կինը ձերբակալեցի: Գունդ մը լրտեսներ ձերբակալելու համար անհրաժեշտ եղած փաստերէն աւելին ունէի:

Ռ. ձեռքերը գրպանը դրաւ եւ իր անգոյն շրթունքները կծկուեցան ժպիտով մը:

— Հոլանտայը զաւարճանալու տեղ չէ, պէտք է խոստովանիլ:

— Իսր թէ բանտը հաճելի տեղ է:

— Զինքը երթալ տեսնելէ առաջ ուեթ օր ձգեցի որ իր խղճմտանքը տապկուի: Այն ատեն Ջիլերը աքանչելի վիճակ մը ստացան: Բանտապահ կինը ըսաւ թէ կատաղութեան նոպանները կ'ունենայ անդադար: Ճշմարիտ էգ վագր մը:

— Իրա՞ւ այդքան ատելի բան է.

— Դուք անձամբ պիտի դատէք:

Իմ սիրած տիպարս չէ: Քիթը բերանը եւ վրան գլուխը չակած աւելի լաւ ըլլայ թերեւս: Մեծ հարուածը տուի: Ըսի իրեն որ իր կեանքի տասը տարին չուզեր հոն անցընել անշուշտ: Կարծեմ զինքը սարսափեցուցի, ամէն պարագայի մէջ ամէն բան ըրի ատոր համար: Կը հասկնաք անշուշտ, ամէն բան ուրացաւ, բայց փաստերը մէջտեղն էին, ապահովցուցի զինքը թէ իր մասին լաւ տեղեկութիւններ ունինք: Երեք ժամ խաչեցի զինքը: Վերջապէս թուլցաւ և ամէնքան խոստովանեցաւ: Այն ատեն խոստացայ իրեն ազատ արձակել, եթէ յաջողէր Զանտրան Ֆրանսա բերել: Վճռապէս մերժեց: «Կը նախընտրեմ մեռնիլ», աղաղակեց: Ի՞նչպէս կը խեղճանար: Զգեցի զինքը որ ուզածին պէս պոռայ Ըսի թէ մէկ երկու օրէն նորէն կը տեսնուինք: Իրականին մէջ միշդ շարաթ մը սպասեցի: Յայտնի էր որ ժամանակ ունեցած էր խորհելու, որովհետեւ ինծի տեսածին պէս մեծ հանդարտութեամբ հարցուց թէ ի՞նչ էր ուզածս: Տասնըհինգ օրէ ի վեր բանտարկուած էր եւ կը սկսէր ժամանակը երկար գտնել: Բառերս չծամծմեցի իր առջեւ եւ համոզուեցաւ:

— Կը խոստովանիմ թէ չեմ հասկնար, ըսաւ Էշընտէն:

— Իսկապէ՞ս: Ինծի համար շատ յստակ է: Եթէ Զանտրան համոզէ սահմանագլուխը անցնիլ եւ Ֆրանսա մտնել, ազատ պիտի ըլլայ ինք Սպանիա կամ հարաւային Ամերիկա մեկնելու, ճամբու ծախքն ալ ստանալով:

— Ի՞նչպէս կ'ուզէք որ կարենայ Զանտրան համոզել:

— Միս ոսկոր դարձած է, ալ չի կրնար համբերել: Նամակները խենդի մը նամակներն են: Այժիկը գրած է թէ չէ կրցած արտօնութիւն ստանալ Հոլանտա երթալու համար (հոն իրար պիտի գտնէին) բայց թոյլ կուտան որ Զուիցերիա երթայ: Չէզոք երկրի մէջ ոչ մէկ վտանգ կայ: Անմիջապէս օգտուած է առիթէն: Ժամադրուած են Լոզանի մէջ:

— Ետո՞յ:

— Հոն հասնելուն տարփածուն նամակով մը պիտի տեղեկացնէ իրեն թէ ֆրանսական իշխանութիւնները չեն արտօնած զինքը Ֆրանսայէն դուրս ելլել, թէ Թոնոն կը մեկնի ու կը խնդրէ որ գայ զինքը հոն գտնէ:

— Կը կարծէ՞ք որ ելլէ գայ:

Ռ. Վայրկեան մը լռեց: Էշընտէնի նայեցաւ հեգնութեամբ:

(Շար.)

## ՑՈՒՑԱՏԵՍԻ

Զ. Ռ. ՄԻՈՒԹԵԱՆ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այսօր Հինգշաբթի երեկոյ ժամը 9ին Ֆլօրիայի վերնայարկը: Գ. Ա. Շահխաթունի կը խօսի իր ցպաւորութիւնները Սուրիոյ որբային եւ գաղթային կեանքին մասին: Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները:

ՄԱՐՍԷՅԼԻ Ա. Ե. Կ. Խաչի ընդհ. անդամական ժողովը այսօր Հինգշաբթի կէս օրէ վերջ ժամը 4ին, Café Noaillesի սրահին մէջ: Օրակարգ՝ Խորհրդակցութիւն նոր [illegible] նարկի մը մասին: Բոլոր անդամներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ԼԻՈՆԻ Ֆր. Հ. Կ. Խաչի անդամուհիները ժողովի կը հրաւիրուին այս Կիրակի կէս օրէ վերջ ժամը 2ին ծանօթ հաւաքատեղին: Ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

17, Rue Damesme :-: PARIS (13e)

Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Dameme :-: PARIS (13e)

Յ.




## Փարիզ եւ արուարձաններ

*ՓԱՆԵԵՕ ՔԱՂԱՔԻ* Արծիւ Ենթակոմիտէն *ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները այս կիրակի, կէս օրէ վերջ ժամը ճիշդ 2.30ին,* 9 rue Mme. Curie, Bagneux *ընկեր Յիզբան Տէրոյեանի բնակարանին մէջ։*

ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ Զաւարեան կոմիտէի դասախօսական ժողովը, վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Ակումբին մէջ։

ՎԱՐԴԱՆ ենթակոմիտէն դասախօսական ժողովի կը հրաւիրէ Հրայր, Ռոստոմ եւ Տաւրոս խումբի ընկերները, վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Առնուվիլի մէջ, ընկ. Արփիար Մարտիրոսեանի բնակարանը։

*Նիւթ՝ «ՃՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ»*

## Գաւառ

ՍԷՆ ԺԻՒԼԻԷՆԻ Զաւարեան խումբի դասախօսական ժողովը այսօր Հինգշաբթի իրիկուն, ժամը 8ին, սովորական հաւաքատեղին։ Կը խօսի՝ ընկ. Ա. Խաչիկեան։

*ՄԱՐՍԷՅԼԻ «Աղբիւր-Սերոբ» խումբի ժողովը այս Կիրակի երեկոյ ժամը 8ին Գրադարանին մէջ։*

### Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ ԺՈՂՈՎՆԵՐ

ՌՈՍՏՈՄ ենթակոմիտէի ժողովը այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 8ին, Հ. Յ. Դ. Պատանեկ. Միութեան Գրադարանի մէջ։ Կը խօսի՝ ընկ. *Ա. Խաչիկեան։*

Զաւարեան խումբի ժողովը այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 8ին, սովորական հաւաքատեղին։ Կը խօսի՝ ընկ. *Աշոտ Խաչիկեան։*

ՍԷՆ ԼՈՒԻ Ակնունի խումբի ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8ին, սովորական հաւաքատեղին։ Կը խօսի՝ ընկ. *Աշոտ Խաչիկեան։*

*Բոլոր ժողովներուն ներկայ պիտի ըլլայ Մարսէյլի կոմիտէի ներկայացուցիչը*

---

Պ. Վահագն Թուր-Սարգիսեան, Այրի Տիկին Մարիամ Ակոնայեան եւ զաւակները՝ Հրանտ, Գուրգէն, Արփինէ, Այրի Տիկին Սրբուհի Քէպապճեան, Տէր եւ Տիկին Յ. Կարապետեան (Երեւան), Տէր եւ Տիկին Պ. Կարապետեան (Երեւան), Տէր եւ Տիկին Գ. Էրզրումեան, Այրի Տիկին Մ. Էրզրումեան (Պոլիս), Տէր եւ Տիկին Պաղտասար Էրզրումեան (Պոլիս), Տէր եւ Տիկին Մ. Տէր Պետրոսեան (Պոլիս), Տէր և Տիկ. Պ. Էրզրումեան (Պոլիս), Տէր և Տիկ. Կարապետ Շահինեան (Պոլիս), Տէր և Տիկ. Ա. Տիօնեան (Պոլիս), Տէր և Տիկ. Աղասի Թուր-Սարգիսեան, Տէր եւ Տիկին Գ. Թուր-Սարգիսեան (Պոլիս), ինչպէս նաեւ Աբովեան, Յովհաննէսեան, Զալըգեան, Կիւրեղեան, Յովակիմեան, Մինասեան ընտանիքները եւ բոլոր ազգականները ու բարեկամները սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց սիրեցեալ կնոջ, զաւկին, քրոջ, ազգականին՝

### ՏԻԿԻՆ ՀԱՆԿԱՆՈՅՇ ԹՈՒՐ-ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

(Ծնեալ՝ ԱԿՈՆԱՅԵԱՆ)

դառնակսկիծ մահը՝ որ տեղի ունեցաւ յետ կարճատեւ հիւանդութեան, երեքշաբթի առաւօտ ժամը 4.30ին, իր բնակարանին մէջ, **60 rue Piat,** (Փարիզ 20), 19 տարեկան ծաղիկ հասակին մէջ։

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այսօր, Հինգշաբթի կէսօրէ վերջ ժամը ճիշդ 3ին, իր բնակարանին մէջ **60, rue Piat, Paris (20):** Հանգուցեալին մարմինը պիտի փոխադրուի **Pantin - Parisien**ի գերեզմանատունը։

---

ՖՐԱՆՍԱՀԱՅ Կարմիր խաչի Վալանսի Մասնաճիւղը ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները այսօր հինգշաբթի գիշեր ժամը 8ին 4 եւ **4bis rue Bouffier:** Խիստ կարեւոր օրակարգ։ Պարտաւորիչ ներկայութիւն։

---

### *Ֆր. Կարմիր Խաչի Փարիզի մասնաճիւղին տարեկան մեծ պարահանդէսը*

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ ՏԻԿ. Ք. ԽԱՏԻՍԵԱՆԻ

ԱՅՍ ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ՄԱՔ ՄԱՀՕՆԻ ՇՔԵՂ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

***29, Ave. Mac-Mahon. 29*** ***Métro: Etoile***

*Սիրուն անակնկալներ, թատ, երգ ու պար*

*Առաջնակարգ ժազ* **«Union Jaz de Lido»** *ժամը 10էն մինչեւ լոյս*

ՄԱՏՉԵԼԻ ԳԻՆՔԷ — ՄՈՒՏՔԸ 10 ՖՐԱՆՔ

---

### ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ Պ. Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻԻ

**Salle Adyar***ի ՇՔԵՂ ԹԱՏԵՐԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ* **4 Square Rapp**

**(Métro: Alma** *կամ* **Ecole Militaire)**

ԱՅՍ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ ՃԻՇԴ 3ԻՆ

ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ ԸԼԼԱԼՈՎ **Ա Ռ Ա Ք Ե Լ  Ա Ղ Ա**

(Երամ փարիզահայ կեանքէ, հեղինակ՝ ՍԷՅԵԱՆ)

*Մասնակցութեամբ եւ ղեկավարութեամբ*

## Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻԻ

եւ Տիկին Լ. Գետրոսեանի, Օր. Անգինէ Ավետեանի, Գ. Ռուպինա Ալիքսանեանի Մելինէի, Պ. Պ. Գմբէթեանի, Կոթիկեանի, Տէրվիշեանի, Սարաֆեանի Գրիգոր - Վահանի եւ ուրիշներու։

ՏՈՄՍԵՐՈՒ ԳԻՆԵՐԸ՝ 20, 15, 10 եւ 7.50 ՖՐԱՆՔ

Տոմսերը կը ծախուին սովորական տեղեր, Պ. Շահխաթունիի մօտ եւ ներկայացման օրը Թատրոնի կիշէն ժամը 12էն սկսեալ։

*Ընդհանուր հասցէ՝* A. Chakatouny. *35, rue des Morillons. Paris (15).*

---

### ՊԱՐԱՆՑԻԿ ԵՐԵԿՈՅԹ

ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԱՆԿԷՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

ԱՅՍ ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ԺԱՄԸ 10ԷՆ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

Անկէնի Սալ տէ Ֆէթի սրահին մէջ

*Գեղարուեստական բաժին եւ անակնկալներ։*

*Պար* — *Գոթիլյոն* — *Ընտիր ճաշ* — *Ճոխ Պիւֆէ։*

ՄՈՒՏՔ 10 ՖՐԱՆՔ



## Ա Ռ Ի Թ  Մ Ը

## 5,000,000 ՀԻՆԳ ՄԻԼԻՈՆ ՖՐ. ՇԱՀԵԼՈՒ

եւ միանգամայն բարեգործութիւն մը ըրած ըլլալու ծախսելով միայն 50 ֆրանք

### ՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆՈՒԹԵԱՆ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

*Կազմակերպուած՝*

### ԳԹՈՒԹԵԱՆ ՊԱԶԱՐԻՆ

*որ տեղի պիտի ունենայ այսօր Հինգշաբթի օր ժամը 14էն սկսեալ մինչեւ 19, ժան - կուժոնի սրահներուն մէջ*

**8, Rue Jean Goujon. Paris (8)**

*Ան նուազն 50 ֆրանք ծախսող այցելու մը կը ստանայ ձրիաբար թօմպոլայի թիւ մը։ Շահող առաջին հինգ թիւերուն պիտի տրուին* **Loterie Nationale***ի* **(3e tranche)** *հինգ թիւեր։*

---

### *Թատերական ներկայացում*

Կազմակերպուած ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ ՍԻԱՄԱՆԹՕ ՎԱՐՈՒԺԱՆ ԱԿՈՒՄԲԻՆ ԿՈՂՄԷ Ի ՆՊԱՍՏ ԻՐ ԳՐԱԴԱՐԱՆԻՆ

*ԱՅՍ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 2.30ԻՆ*

*Կը խօսի՝ ՀԱՅՐ ՍԱՀԱԿ ՏԷՐ-ՄՈՎՍԷՍԵԱՆ*

Պէշիկթաշլեանի Թատերասրահին մէջ 26, rue Troyon. Sèvre

*Կը ներկայացուի Ազգային - Յեղափոխական կեանքէ առնուած*

ԱՆԴՐԱՆԻԿ ողբերգութիւնը

*Մուտք 5 ֆրանք։*

---

### *Պարահանդէս*

*ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՎԷՆՍԷՆԻ Մ.ՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ*

*26 Նոյեմբեր կիրակի կէս օրէ վերջ ժամը ...էն մինչեւ կէս գիշեր*

***8 RUE JEAN GOUJON****ի ՇՔԵՂ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ, ՄԷԹՐՕ ՇԱՆ Զ'ԷԼԻԶԷ*

*Օրքէսթրը՝* PESNTI — *Ճոխ եւ մատչելի պիւֆէ։*

Մուտք կիները՝ ... ֆրանք, այրերու՝ 10 ֆրանք։

---

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

Շքեղ տպագրութեամբ եւ պատկերազարդ

### ԿԵԱՆՔ ԵՒ ԱՐՈՒԵՍՏ

ՏԱՐԵԳԻՐՔ Դ. ՏԱՐԻՆ

1934

ԳՒՄԵԼ՝ **M. & M. Barsamian.**

**94, Rue Lafayette. Paris (10)**

*ԳԻՆ՝ 25 ՖՐԱՆՔ ԱՄԷՆ ՏԵՂԻ ՀԱՄԱՐ*








**Le Gérant : H. STEPHAN**

**Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme :-: PARIS (13e)**

զսենէ մէկ խոտիկ Թուրք որ խուսափի իր մէկ մասն իսկ զոհել զայն ստանալու համար։ (Յառաջ.— Անշուշտ ասոր համար է որ տուն – տեղ են եղած հայաշատ հողերու վրայ)։

Աւելորդ է ըսել թէ Թուրք գործավարքին այս խօսքերը յայտնապէս ուղղուած են Պուլկարիոյ դէմ, որ հողային պահանջներ ունի։

Թէվֆիք Րիւշտի այս առթիւ ալ շեշտեց թէ Թուրքիա եւ Ցանաստան կը կազմեն մէկ երկիր, թէ չկայ ո՛ր եւ է ստելծ հարց երկու ազգերուն միջեւ, բացի ընթացիկ խնդիրներէ որ կրնան դիւրաւ կարգադրուիլ։ «Այսօր յունին թուրք գիւղացին յունական չահերուն վրայ կը մտածէ այնպէս ինչպէս իր երկրի շահերուն վրայ»։

## Լիթվինով Հռոմ կ'երթայ

Խ. Միութեան արտաքին գործավարը մեկնած է Ամերիկայէն եւ Հռոմ կը սպասուի դեկտ. 2ին։ Քաղաքական շրջանակներու մէջ մեծ կարեւորութիւն կուտան այս ճամբորդութեան։ Մուսոլինին ինք հրաւիրած է ռուս գործավարը։ Կ'ըսուի թէ երկու վարիչները պիտի խօսին զինաթափութեան եւ Ազգերու Դաշնակցութեան մասին։ Իտալական տեսակէտը այն է թէ Խ. Միութեան գործակցութիւնը ապահովելու համար անհրաժեշտ է բարենորոգել Ազգերու Դաշնակցութիւնը, կամ գտնել միջազգային գործակցութեան նոր ձեւ մը։

Պ. Լիթվինովի ճամբորդութիւնը կը զուգադիպի Ֆաշական Գերագոյն Խորհուրդի նիստին հետ որ տեղի կ'ունենայ դեկտ. 6ին եւ որ յատկապէս պիտի քննէ Ազգերու Դաշնակցութեան խնդիրը։ Այս առթիւ իտալական թերթերը կը գրեն թէ Նիւ Եորքէն մեկնելէ առաջ, հարցազրոյցի մը առթիւ, Պ. Լիթվինով Ազգերու Դաշնակցութիւնը կոչած է դիակ մը զոր ոչ մէկ փորձ կրնայ վերակենդանացնել։ Մուսոլինին ալ այդ կարծիքն ունի, թէեւ փափկութեամբ կ'արտայայտուի։

Վերջապէս, այս տեսակցութեան առթիւ պիտի քննուի նաեւ ռուս-իտալական յարաբերութեանց խնդիրը։ Իտալիան կ'ուզէ միջնորդի դեր կատարել երկու երկիրներուն միջեւ

## Երկու օր գործադուլ Պաղեստինի մէջ

Երուսաղէմէն կը հեռագրեն նոյ. 26 թուականով.—

Մուսա փաշա էլ Հիւսէյնի, արաբական Գործադիր Կոմիտէին նախագահը, հրամայեց ընդհ. գործադուլ կատարել ամբողջ Պաղեստինի մէջ, նոյ. 27ին եւ 29ին։ Այդ երկու օրերուն է որ պիտի դատուին վերջին դէպքերու առթիւ ձերբակալուած Արաբները, որոնք բողոքած էին հրէական ներգաղթին դէմ։ Ինչպէս յայտնի է, բազմաթիւ մարդիկ սպաննուեցան կամ վիրաւորուեցան այս դէպքերուն հետեւանքով։

## Պ. Շոթան կազմեց նոր դահլիճը

Պ. Էսիոյի հրաժարման վրայ, նոր դահլիճը կազմեց ներքին նախարար Պ. Շոթան, արմատական տարրերէ։ Մեծ փոփոխութիւններ չկան նոր կազմին մէջ։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՖԻՐՄԷՆ ԺԷՄԻԷ, Թէաթր Անթուանի և յետոյ Օտէոնի տնօրէնը, յանկարծամահ եղաւ կիրակի օր։ Ծնած էր 1865ին։ Երեք անգամ Քոնսէրվաթուարին մէջ ձախողելէ յետոյ, 1888ին թատերական ասպարէզը մտաւ եւ հետզհետէ փայլուն դիրքերու հասաւ։ Վերջերս նուիրուած էր շարժանկարի։ Մեծ արուեստագէտ մըն էր։

ԿԵՂԾ ՁՈՒԼ ՈՍԿԻ կը ծախէին երկու իտալացիներ, Ֆասսի եւ Մոնֆրէտինի։ Երկու գաղտնի ոստիկաններ իբրեւ յաճախորդ ներկայանալով, յաջողեցան երեւան հանել կեղծիքը։ Բայց խարեբաները ատրճանակի սպառնալիքին տակ յաջողեցան գանձել սակարկուած գինը, 42,000 փրանք... Ցետոյ բուռն կռիւ մը տեղի ունեցաւ, որու միջոցին վիրաւորուեցաւ խարեբաներէն մէկը։ Ի վերջոյ կարելի եղաւ ձերբակալել երկուքն ալ։ Նախապէս մէկը երեք, միւսը երկու անգամ դատապարտուած են գողութեան համար։

ԱԹԷՆՔԻ մէջ նորէն ձերբակալուեցաւ հրամանատար Տիֆալոս, Ապահովութեան նախկին տեսուչը, որ Վենիզէլոսի դէմ կատարուած մահափորձին առթիւ բռնուած եւ յետոյ ազատ արձակուած էր։

60,000 ՀԱՆՔԱԳՈՐԾՆԵՐ ամէն աշխատանք դադրեցնելով ցոյց մը կատարեցին հիւսիսային գաւառներու մէջ։ Շատերը քալելով Առաս գացին, իրենց պահանջները ներկայացնելու։

ՀՈՂԱԳՈՐԾԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆՆ ալ, որ նոր կազմուեցաւ, բազմաթիւ ժողովներ գումարեց ամբողջ Ֆրանսայի մէջ։ Այս առթիւ բանաձեւ մը քուէարկուեցաւ, շարք մը բարենորոգումներ պահանջելով, քանի որ գիները ինկած են եւ գիւղացին չի կրնար ծախել իր բերքը։

## Հ. Յ. Դ.

Հ. Ե. Դ. Վալանսի «Քրիստափոր» Ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ իր ընկերները այսօր Երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Նիւթ. կ'ուլայ ընկեր ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ։

Այրի տիկին Անիկ Միլտոնեան, Պ. Ստեփան Միլտոնեան, տէր եւ տիկին Ց. Միլտոնեան, տէր եւ տիկին Ց. Օճանեան, Այրի տիկին Վիքթորիա Մարգարեան եւ աղջիկը, տէր եւ տիկին Հաճի Դրիգոր Թապիպեան, տէր եւ տիկին Ստեփան Կէօզիւմեան, Այրի տիկին Դայիանէ Միլտոնեան, Այրի տիկ. Եպրուհի Միլտոնեան (Պոլիս), տէր եւ տիկին Կ. Պագրճեան (Փարիզ), Այրի տիկ. Եղիսաբեթ Այանճեան եւ զաւակունք, տէր եւ տիկին Մ. Այանճեան, Պ. Ղեւոնդ Բարմաքսըզեան, տէր եւ տիկին Հ. Բարմաքսըզեան (Սելանիկ), տէր եւ տիկին Կ. Ատալեան (Պուլկարիա), տէր եւ տիկին Ց. Աֆարեան եւ ազգականները խորին կսկիծով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, աներհօր, քեռայրին եւ ազգականի՝

## Պ. ՆՇԱՆ ՄԻԼՏՈՆԵԱՆԻ

դառնաղէտ եւ յանկարծական մահը։

Յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ 24 Նոյեմբեր Ուրբաթ օր, Սէն-Ժէռոմի (Մարսէյլ) եկեղեցւոյն մէջ։ Հանգուցեալին մարմինը ամփոփուեցաւ Թայլին գերեզմանատունը։

## Երեկոյթ - Պարահանդէս

կազմակերպուած ԵՓՐԱՏ Նուագախումբի կողմէ, իր կազմութեան չորրորդ տարեդարձին առթիւ. տեղի կ'ունենայ 16 Դեկտեմբեր Շաբաթ երեկոյ

Կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կիւրինցի, Տիկին Զաւազան (Զարուհի) Պարսամեան, հօր անունը չէ յիշեր, մօր անուն Մարիամ. ամուսնոյն անունը Յովհաննէս Գոչունեան, կը փնտռէ իր եղբայրները Սարգիս, Աւետիք, Մանուկ, Գաբրիէլ եւ քոյրը Եղիսաբէթ։ 1909ին ամուսնանալով մեկնած է Կիւրինէն Ամերիկա։ Այս թուականէն ի վեր կորսնցուցած է իրենց հետքը։ Իրենց մասին լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել Mme. Zarouhi Cotchounian. 15, rue deTrans, Draguignan (Var) France.

## ԾՈՒՆՆԱՏԵՏՐ

Զ. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ Փարիզի մասնաճիւղին շաբաթական դասախօսութիւնը այս Հինգշաբթի երեկոյեան ժամը 9ին, Ֆլորիայի վերնայարկը։ Կը դասախօսէ Պ. Կ. Բասմաջեան, նիւթ՝ Քննական Հայոց Պատմութիւն։ Կը հրաւիրուին անդամներն ու փափաքողները։

ԱԼՖՈՐՎԻԼԻ Կ. Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս երեկոյ ժամը 8.30ին Հայ Ակումբին մէջ։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու եւ ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւոր։

Imprimerie A. DER (AGOPIAN) Le Gérant : H. STEPHAN
17, Rue Dameame :-: PARIS (13e)















խորհրդարանին։ Իր նախորդը, Սառոյի դահլիճը, կազմուած էր հոկտեմբեր 27ին եւ ինկաւ նոյ. 24ին։ Գ. Շոթան երկրորդ անգամն է որ դահլիճ կը կազմէ։ Ունի 18 նախարար եւ 8 խորհրդական, որոնց հինգը ծերակուտականներ են, իսկ 23ը երեսփոխաններ։

## Բանտէն հանելով ցաւին կախեցին

### ԱՀԱՒԵԼԻ ՄԱՆՐԱՄԱՍՆՈՒԹԻՒՆՆԵՐ ԱՄԵՐԻԿԵԱՆ « ԼԻՆՉ »Ի ՄԸ ՄԱՍԻՆ

« Լինչ »ի օրէնը միշտ ի պատուի է Մ. Նահանգներուն մէջ։

Ահա նոր դէպք մը, որ սարսափ կ'ազդէ իր մանրամասնութիւններով։

Վերջերս Գալիֆոռնիոյ մեծահարուստ վաճառականներէն մէկուն զաւակը, 22 տարեկան, առեւանգուած էր անծանօթներու կողմէ։ Առեւանգիչները 40,000 տոլար փրկանք պահանջեր էին, եւ չստանալով, սպաննեցին զոհը եւ դիակը գետը նետեցին։

Դէպքը մեծ զայրոյթ պատճառեց ամբողջ նահանգին մէջ։ Անցեալ շաբթու ոստիկանութիւնը ձերբակալեց երկու կասկածելիներ, Տարմէնտ եւ Հոմս, յայտարարելով թէ ամէն բան խոստովանած են։ Երկուքն ալ բանտարկուեցան Սան Ճոզէի բանտին մէջ, որ պաշտպանութեան տակ առնուեցաւ, ամբոխային ցոյցերու դէմ։

Հակառակ բոլոր զգուշութեանց, երկուշաբթի գիշեր տասը հազար հոգինոց ամբոխ մը խռնուեցաւ բանտին առջեւ եւ ներս խուժեց։ Ոստիկանութիւնը իրաւունք չէր ստացած կրակ ընելու։ Երկու ոստիկաններ եւ ոստիկանապետ մը փորձեցին համոզել շղթայազերծ ամբոխը, բայց ծանրապէս վիրաւորուելով հիւանդանոց փոխադրուեցան։ Ամբոխը մօտենալով երկու բանտարկեալներու խցիկին, կատաղօրէն յարձակեցաւ վերջին պահուն կազմուած պատնէշին վրայ։ Ոստիկանները արտասուաբեր կազ արձակեցին, բայց ամբոխը կորեւորութիւն չտուաւ եւ երկու ժամ տեւնելէ յետոյ, յաջողեցաւ խորտակել պատնէշը։ Երկու բանտարկեալները բռնուեցան, կապուեցան եւ փողոցներէն քաշկռտուելով բացատատ մը տարուեցան։ Այնտեղ երկու թշուառները գթութիւն հայցեցին, յայտարարելով թէ անմեղ են։ Բայց ամբոխը խեղդկապը անցուց եւ ծառէ մը կախեց երկուքն ալ։ Ցետոյ դիակները օրօրեց երկար ատեն, եւ վար առնելով, վրան կազ թափեց եւ վառեց։ Շատ մը կիներ մարեցան։

Ամբոխը «իր վրէժը լուծած» ըլլալով, ցրուեցաւ վայրենի կանչերով․․

## Օրը ցերեկով աւազակութիւն Մարսէյլի մէջ

Երկուշաբթի առտու յանդուգն աւազակութիւն մը տեղի ունեցաւ Մարսէյլի մէջ։ Գ. Տիւռան, քաղաքապետութեան յուղարկաւորութեանց բաժնի տնօրէնը, ինքնաշարժով կ'անցնէր փողոցէն, երբ անծանօթ մը խոյացաւ եւ գոռաց — « Ձեռքերը վե՛ր »։ Ուրիշ երեք մեղսակիցներ ալ, ատրճանակները բռնած, տնօրէնին ինքնաշարժը մտան եւ յափշտակեցին պայուսակը որ կը պարունակէր 110,000 Ֆրանք։ Ցետոյ բոլորը մէկ ինքնաշարժ մը ցատկեցին եւ անհետացան։ Բազմաթիւ անցորդներ տեսան դէպքը, բայց չհամարձակեցան միջամտել։

### Մ. ԱՂԱՋԱՐԵԱՆԻ ՍՊԱՆՈՒԹԵԱՆ ԴԱՏԸ ՓՈԽԱՆՑՈՒԱԾ ԳԵՐ. ԱՏԵԱՆԻՆ

« Էլ Ահրամ » կը գրէ (21 նոյ.) —

Առջի օր, Հանրապետութեան նախագահ Գ. Շարլ Տէպպաս ստորագրած է որոշմնագիր մը, որով Միհրան Աղազարեանի սպանութեան դատը կը փոխանցուի Գերագոյն Ատեանին։ Ոճիրը գործադրուած էր Զօգազ Գլաբ թաղին մէջ, Հնչակ եւ Դաշնակ կուսակցութեանց պայքարին հետեւանքով։

Ցայտնի է որ իբրեւ ոճրագործ ամբաստանուած է Ցակոբ Քէպապճեան. սակայն Ապահովութեան պաշտօնատուները, հակառակ իրենց ճիգերուն, չկրցան ցարդ ձերբակալել զայն։ Դատավարութիւնը, հետեւաբար, տեղի պիտի ունենայ ի բացակայութեան։

## ՀԱՒԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԱՀԱՆ ՅԱՌԱՋի բաժանորդներուն համար

« ՅԱՌԱՋ » գնած է ՉՈՐՍ տոմսեր, Ֆրանսայի Ազգ. վիճակախաղէն։

Այս վիճակահանութենէն օգտուելու իրաւունք ունին բոլոր անոնք որ,

### 1933 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1ԷՆ ՄԻՆՉԵՒ ԳՆՈՒԱԾ ՏՈՄՍԵՐՈՒ ՎԻՃԱԿԱՀԱՆՈՒԹԵԱՆ ՕՐԸ

1․— Նոր բաժանորդ կը գրուին ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ։

2․— Կը նորոգեն իրենց բաժնեգինը, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ։

Այսպէս, եթէ այդ չորս թիւերէն մէկը կամ աւելին պարգեւ շահին.

ԱՐԴԻՒՆՔԻՆ ԿԷՍԸ (ՀԱՐԻՒՐԻՆ 50), ՊԻՏԻ ԲԱԺՆՈՒԻ ԱՅՍ ԿԱՐԳԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ, հետեւեալ համեմատութեամբ․—

| | |
|---|---|
| ՏԱՐԵԿԱՆ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ | 60 % |
| ՎԵՑԱՄՍԵԱՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ | 30 % |
| ԵՌԱՄՍԵԱՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ | 10 % |

Կանխիկ վճարող բաժանորդներուն անունները ՊԻՏԻ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԻՆ ՕՐԸ ՕՐԻՆ, մասնաւոր խորագրի մը տակ, որ եւ է թիւրիմացութիւն կանխելու համար։

### ԱՀԱ ՄԵՐ ԳՆԱԾ ՏՈՄՍԵՐԷՆ ԵՐԿՈՒՔԻՆ ՇԱՐՔ՛Ն ՈՒ ԹԻՒԵՐԸ
### ՉՈ՛ՐՐՈՐԴ ՇԵՐՏԷՆ (4 tranche)

Թիւ 1 92,412 շարք **S**

Թիւ 2 78,009 շարք **T**

ԱՅՍ ԱՌԻԹԷՆ ԿՐՆԱՆ ՕԳՏՈՒԻԼ ՆԱԵՒ ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԸ, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ ՏԱՐԵԿԱՆ կամ ՎԵՑԱՄՍԵԱՅ (եռամսեայ չունինք արտասահմանի համար)։

### ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

« Համազգային »ի Լիոնի մասնաճիւղը ընդհանուր անդամական ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամները եւ համակիրները վաղը հինգշաբթի իրիկուն ժամը 8ին, Գ. Քէնտէրեանի ճաշարանին մէջ, 40 Rue Pierre - Corneille։ Կը խնդրուի անպայման ներկայ գտնուիլ։ Կարեւոր օրակարգ։

### ՑՈՒՑԱՏԵՍ

Ջ. Ռ. ՄԻՈՒԹԵԱՆ Փարիզի մասնաժողովին շաբաթական դասախօսութիւնը վաղը հինգշաբթի երեկոյեան ժամը 9ին, Ֆլորիայի վերնայարկը։ Կը դասախօսէ Գ. Կ. Բասմաջեան, նիւթ՝ Քննական Հայոց պատմութիւնը։ Կը հրաւիրուին անդամներն ու փափաքողները.

ԱԼՖՈՐՎԻԼԻ Կ. Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս երեկոյ ժամը 8.30ին Հայ Ակումբին մէջ։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու եւ ընկերուհիներու ներկայութիւնը պարտադիր։

ՖՐԱՆՍԱԿԱՆ բանակի հայ նախկին կամաւորներու միութեան ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ, այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.45ին, Café des Trois Portes (Ա. յարկ), 65 Rue Lafayette, (Métro Cadet)։

Կը խնդրուի բոլոր անդամներէն ներկայ գտնուիլ։ Կարեւոր օրակարգ։

### LOTERIE NATIONALE

Լօթըրի Նասիօնալի տոմսակներու գնման համար մի սպասէք վերջին օրերուն։ Այժմէն դիմեցէք

**Պ. Ս. ՃԵՐՄԱԿԵԱՆԻ**

44, rue Lafayette, Գ. Յ. ՏԱՐԱԵԱՆի գրասենեակը։

Le Gérant : H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme :-: PARIS (13e)

### Հ. Յ. Դ.

ԼԻՈՆԻ կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

ԼԻՈՆԻ կոմիտէին դասախօսական ժողովը այս երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին։ Կը հրաւիրուին ընկերներ եւ համակիրներ։ Կը դասախօսէ՝ ընկեր Աշոտ Խանհակեան։

Վիէնի Կոմիտէն ընդհ. ընկերական ժողովի կը հրաւիրէ իր շրջանի երեք խումբերու բոլոր ընկերները, այս ուրբաթ իրիկուն ժամը ճիշդ 8ին, «Թամակ» Ակումբին մէջ։ Կարեւոր օրակարգ։ Կը խնդրուի բոլոր ընկերներէն ներկայ ըլլալ ճիշդ ժամանակին։ Կը խօսի՝ ընկ. Աշոտ Խանհակեան։

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէն, Մարսէյլի եւ արուարձաններու ընկերներու կողմէ ցաւակցութիւն կը յայտնէ ընկ. Ստ. Միլտոնեանի եւ իր պարագաներուն՝ իր հօր ՆՇԱՆ ՄԻԼՏՈՆԵԱՆԻ դառնաղէտ մահուան առթիւ։

## Թէյասեղան Լիոնի մէջ

ԸՆԿԵՐ Ս. ՁԱՒԱՐԵԱՆԻ ՄԱՀՈՒԱՆ 20ԱՄԵԱԿԻ ԱՌԹԻՒ

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին Զարդարեան Գրադարանին մէջ

Կը հրաւիրուին ընկերներ եւ համակիրներ։

Ներկայ կ'ըլլայ ընկեր Աշոտ Խանհակեան։


























